Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ




№ 11 ՀՈՒՆԻՍ 1956

digitised by A.R.A.R.@

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԳ Կենտկոմ, IV հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։




# ՀԱՅՐԵՆԻՔԻ ԲԱՐՕՐՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Լենինյան կոմերիտմիությունը, մեր մեծ երկրի պանծալի երիտասարդությունը բուռն խանդավառությամբ ընդունեց հարազատ Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության կոչը՝ երկրի արևելյան և հյուսիսային շրջաններում ու Դոնբասի նորակառույցներում աշխատանքի մեկնելու մասին։ Տասնյակ հազարավոր կոմերիտականներ և արտամիութենական երիտասարդներ ջերմորեն արձագանքելով պարտիայի կոչին, դիմում են կոմերիտմիության շրջանային կոմիտեներին, խնդրելով իրենց աշխատանքի ուղարկել Սիբիրի և Հեռավոր Արևելքի նորակառույցները։ «Մենք կաշխատենք այնտեղ,— ասում են նրանք,— ուր կոչ է անում մեզ, մեր հարազատ Կոմունիստական պարտիան»։

Մեր երկրի այն վայրերը, որ պարտիայի կոչով այս տարի և եկող տարի աշխատանքի կանցնեն 400—500 հազար պատանիներ ու աղջիկներ, հռչակված են անհամար հարըս-





3532-56
digitised by A.R.A.R.@

տություններով: Օրինակ, արևելյան շրջաններում են կենտրոնացված ՍՍՌՄ-ում առկա ածխի բոլոր պաշարների մինչև 75 տոկոսը և հիդրոէներգիայի 80 տոկոսը, անտառային հարստությունների չորս հինգերորդական մասը, գունավոր և հազվագյուտ մետաղների հիմնական պաշարները, քիմիական հումքի, երկաթի հանքաքարի և շինանյութերի հսկայական ռեսուրսները: Անսպառ են Սիբիրի տայգայի հարստությունները: Հենց միայն Կրասնոյարսկի երկրամասում անտառները բռնում են ավելի քան 148 միլիոն հեկտար տարածություն, իսկ փայտեղենի պաշարն ավելի է 10 միլիարդ խորանարդ մետրից:

Բացի այդ, գործնականում հաստատված է, որ Արևելքում (Սիբիրում) ածխի հանույթը և էլեկտրաէներգիայի արտադրությունը տնտեսական տեսակետից ավելի արդյունավետ են, քան ՍՍՌՄ-ի եվրոպական մասում:

Պարտիայի XX համագումարին տված իր զեկուցման մեջ ընկ. Ն. Ս. Խրուշչևը կոնկրետ փաստերով ցույց տվեց, որ հինգերորդ հնգամյակում ածխի հանույթի մեկ տոննայի աճման կապիտալ ներդրումների ծախսերը Արևելյան Սիբիրի ավազաններում երկու և կես անգամ, իսկ Կուզբասում մեկ ու կես անգամ քիչ էին, քան Դոնբասում: Նախատես-



վում է 1960 թվականին Կուզբասում արդյունահանել 80 միլիոն տոննա ածուխ, որը պետության վրա կնստի 2 միլիարդ 400 միլիոն ռուբլով էժան, քան Դոնբասում արդյունահանվող նույն քանակությամբ ածուխը:

Ինչպես գիտենք, Անգարա գետի վրա կառուցվում է 3 միլիոն 200 հազար կիլովատ կարողությամբ Բրատսկի հիդրոէլեկտրակայանը: Նա տարեկան կարտադրի 22 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, այսինքն այնքան, որքան ՍՍՌՄ-ի եվրոպական մասի երկու խոշորագույն՝ Կույբիշևի և Ստալինգրադի հիդրոէլեկտրակայանները: Մինչդեռ Բրատսկի հիդրոկայանի կառուցումը երկու անգամ էժան կնստի, քան Կույբիշևի և Ստալինգրադի հիդրոէլեկտրակայանների կառուցումը միասին վերցրած, իսկ Բրատսկի հիդրոէլեկտրակայանի տարեկան արտադրած էլեկտրաէներգիայի ինքնարժեքը 200 միլիոն ռուբլով ցածր կլինի, քան Կույբիշևի և Ստալինգրադի հիդրոէլեկտրակայաններում: Նախատեսվում է նոր հնգամյակում Սիբիրը դարձնել Սովետական Միության ածխի արդյունահանման և էլեկտրաէներգիայի արտադրության խոշորագույն բազան:

1955 թվականին Ուրալը և Արևմտյան Սիբիրը երկրին տվեցին ավելի քան 14 միլիոն



digitised by A.R.A.R.@

տոննա չուգուն, որը գերազանցում է չուգունի ձուլումը Անգլիայում։

Վեցերորդ հնգամյակում Կենտրոնական Սիբիրի միասնական էներգոսիստեմի ստեղծման սկիզբը կդրվի։ Այդ սիստեմը Անգարայի և Ենիսեյի հիդրոէլեկտրակայանները կմիավորի Կուզբասի, Նովոսիբիրսկի, Իրկուտսկի ու Կրասնոյարսկի ջերմային և հիդրավլիկ էլեկտրակայանների հետ։

Միավորված էներգոսիստեմների ստեղծումը զգալիորեն բարձրացնում է էլեկտրաէներգիայի մատակարարման հուսալիությունը, լրջորեն բարելավում է կայանների աշխատանքի տնտեսական ցուցանիշները, հնարավորություն է տալիս խոշոր էլեկտրակայաններ կառուցել միջին և ոչ մեծ կարողությամբ, նվազ խնայողաբեր բազմաթիվ էլեկտրակայանների փոխարեն և հնարավորություն է ընձեռում էլեկտրիֆիկացմամբ ընդգրկել նոր շրջաններ, որոնք ներկայումս էլեկտրաէներգիայի պակաս ունեն։

1960 թվականին Սովետական Միության արևելյան շրջաններում էլեկտրաէներգիայի արտադրությունը կհասնի 130 միլիարդ կիլովատ ժամի։ Այսինքն այնքան, որքան այժմ արտադրում են Անգլիան և Ֆրանսիան միասին վերցրած։ Նույն ժամանակաշրջանում



ածխի հանույթը կկազմի մոտավորապես այն ածխի կեսը, որը մեկ տարում արդյունահանվելու է ամբողջ Սովետական Միությունում։

Վեցերորդ հնգամյակի տարիներին Սիբիրում կառուցվելու է 65 մեքենաշինական ձեռնարկություն՝ դազգահաշինական, դարբնոցային-մամլային սարքավորման, էլեկտրաքարշաշինական, գործիքաշինական, բարձրավոլտ ապարատուրայի և այլն։

Սիբիրում մեծ չափերով կավելանա հացահատիկի արտադրությունը։ Խամ և խոպան հողերի յուրացման միջոցով 1960 թվականին Սիբիրը, Ուրալը և Ղազախստանը կրկնակի չափով շատ հացահատիկ կտան, քան Ուկրաինան։ Ընդհանրապես Սիբիրը վիթխարի պոտենցիալ հնարավորություններ ունի ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման գործում։ Իզուր չէ, որ մեծ գիտնական Լոմոնոսովը ասել է, թե Ռուսաստանի հզորությունն աճելու է Սիբիրի միջոցով։ Ռադիշչևը նշել է, որ երբ Սիբիրը բնակելի դառնա, ապա նա մեծ դեր կխաղա աշխարհի տարեգրության մեջ։

Պրիմորյեն, որտեղ աշխատանքի կմեկնեն մեր ռեսպուբլիկայից բազմաթիվ երիտասարդ հայրենասերներ, ունի բազմազան օգտակար հանածոների հանքավայրեր։ Պրիմորյեում



digitised by A.R.A.R.@

կան քարածխի, երկաթահանքի, անագի, արճճի և ցինկի զգալի պաշարներ, արդյունահանվում է նաև ոսկու հանքաքար։ Այստեղ հիմնական բնակիչները ռուսներ են, կան նաև ուկրաինացիներ և բելոռուսներ։ Փոքր ազգերից բնակվում են նանայցիներ, օրոչիներ, ուդեգեններ։ Բնակչության 50 տոկոսից ավելին ապրում են քաղաքներում։ Նրանք գերազանցապես զբաղվում են ձկնային, լեռնահանքային և անտառային արդյունաբերությամբ։ Արդյունաբերական արտադրանքի թողարկումը 1953 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, աճել է ավելի քան 228 անգամ։ Արդյունաբերական արտադրանքի մեջ գերակշռում է պարենային ապրանքների թողարկումը։ Զարգացած է նաև ածխարդյունաբերությունը։ 1953 թվականին, 1922 թվականի համեմատությամբ, ածխի հանույթը աճել է ավելի քան 10 անգամ։

Պրիմորյեում ծաղկել ու բարգավաճել է նաև գիտությունն ու կուլտուրան։ Այժմ երկրամասում կա ավելի քան 1.170 դպրոց և տեխնիկում, պոլիտեխնիկական, մանկավարժական, ձկնարդյունաբերության ինստիտուտներ, ինչպես նաև ծովագնացության բարձրագույն ուսումնարան։ Ստեղծված է



թատրոնների, կինոների, ակումբների, կուլտուրայի տների ու գրադարանների լայն ցանց։ Երկրամասում կա 253 գրադարան, 306 ակումբ, 125 խրճիթ-ընթերցարան, 23 շրջանային կուլտուրայի տուն, թանգարան։

Երկրամասում գործում է 25 գիտական հիմնարկ, հրատարակվում է 51 թերթ և այլն։

Նոր հնգամյակում զարգացման լայն հեռանկարներ են բացվում Պրիմորյեի երկրամասի ժողովրդական տնտեսության համար։

Ահա այդ վիթխարի հարստությունները ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության հետագա զարգացմանը ի սպաս դնելու համար է, որ հարազատ պարտիայի կոչով ինչպես Սովետական Միության, այնպես էլ մեր ռեսպուբլիկայի երիտասարդությունը մեծ ոգևորությամբ աշխատանքի է մեկնում դեպի Սիբիր, Ղազախստան, Պրիմորյե և Դոնբաս։

—————

digitised by A.R.A.R.@

# ԿՐՈՆԱԿԱՆ ՏՈՆԵՐԸ ԵՎ ՆՐԱՆՑ ՎՆԱՍՆԵՐԸ

Խ. ԴԱՆԻԵԼՅԱՆ

Մարդկության պատմության մեջ եղել է մի շրջան, երբ ոչ մի կրոն գոյություն չի ունեցել։ Հարց է ծագում, եթե կրոն չի եղել, իսկ ինչպես է առաջացել կրոնի պաշտամունքը։ Կրոնի սպասավորները, ինչպես նաև բուրժուական ռեակցիոն գիտնականները պնդում են, որ իբր թե կրոնը միշտ եղել է ու կմնա, որ նա աստծու հրամանով է ըստեղծվել և որ առանց կրոնի մարդիկ չեն կարող ապրել։

Մարքսիզմ-լենինիզմը սովորեցնում է, որ կրոնը ծագել է այն ժամանակ, երբ մարդը հետամնացության պատճառով անզոր էր բացատրելու բնության երևույթները (կայծակ, կարկուտ, երկրաշարժ, որոտ, երաշտ, ջրհեղեղ, հրդեհ և այլն), առավել ևս անզոր էր դրանց դեմ պայքարելու։ Բնության արհավիրքների դեմ պայքարելու անզորությունը, վախը այդ երևույթների հանդեպ ստըրկացրել էին մարդկանց և ստեղծել այն մը-



տայնությունը, թե իսկապես կա մի հզոր ձեռք, որը ղեկավարում է այդ բոլորը։

Լենինը նշում է, որ շահագործվող դասակարգերի անզորությունը շահագործողների դեմ մղվող պայքարում նույնպես անխուսափելիորեն հավատ է ծնում անդրշիրիմյան կյանքի նկատմամբ, այնպես, ինչպես վայրենու անզորությունը բնության դեմ մղած պայքարում ծնում է հավատ դեպի աստվածները, սատանաները, հրաշքները և այլն։

Ամեն մի կրոն,— ասել է Էնգելսը,— ոչ այլ ինչ է, եթե ոչ այն արտաքին ուժերի ֆանտաստիկ արտացոլումը մարդկանց գլուխներում, որոնք իշխում են մարդկանց վրա նրանց ամենօրյա կյանքում, մի արտացոլում, որի մեջ երկրային ուժերը վերերկրային ձև են ընդունում։

Այսպիսով, մարդկանց տնտեսական, կուլտուրական հետամնացությունը, բնության երևույթները բացատրելու և նրանց դեմ պայքարելու անկարողությունը հանդիսացել են կրոնի ծագման պատճառները։ Լենինն ասել է, որ երկյուղն է աստվածներ ստեղծել։

Երկյուղը մարդկանց ստիպեց խնդրել, աղաչել, նվերներ (մատաղ) մատուցել գերբնական ուժերին, որպեսզի նրանք մարդկանց նկատմամբ իրենց զայրույթը մեղմաց-



digitised by A.R.A.R.@

նեն։ Այստեղից էլ ծագում են առնում կրոնական բազմաթիվ տոները։ Կրոնական տոները հանդես են եկել ժողովրդի համար կենսական նշանակություն ունեցող տնտեսական աշխատանքների, օրինակ՝ վարի ու ցանքի, բերքահավաքի, անասուններին արոտ հանելու, խոտհնձի և այլի հետ կապված։ Աշխատանքային որևէ պրոցես սկսելիս, մարդիկ աղոթում, խնդրում էին «ամենակարողին», որ լավ բերք տա, անասունները բազմացնի, ձկան որսն առատ անի և այլն։ Այդպիսի օրերը հետագայում դարձան կրոնական տոներ։

Այնուհետև հանդես եկան «հնարագետ» մարդիկ, որոնք իբր թե «կապ» են հաստատել մարդկանց և «աստծու» միջև։ Այդ միջնորդ խաբեբաները ժամանակակից հոգևորականության նախնիներն էին։ Նրանք հնարեցին զանազան կրոնական տոներ ու ծիսակատարություններ, որոնց հիմքում ընկած են ոչ թե պատմական փաստերը, այլ մտացածին, հնարովի դեպքերը։ Օրինակ՝ թեև Քրիստոսը ոչ ծնվել, ոչ էլ գոյություն է ունեցել, սակայն այդ տոնը տոնվում է դարեր շարունակ։ Կրոնական տոները կապիտալիստական երկրներում մի նպատակ ունեն՝ այն



է՝ օգնել շահագործող դասակարգերին ամրապնդելու իրենց տիրապետությունը։

Կրոնի սպասավորները տգիտության մեջ խարխափող մարդկանց, չքավորներին, աղքատներին մխիթարում են նրանով, թե իբր այս կյանքը ժամանակավոր է, իսկական, երջանիկ ու տևական կյանքը էն աշխարհումն է, պահանջելով նրանցից համբերություն և հնազանդություն տերերի, շահագործողների նկատմամբ։

Կրոնական տոներն ու ծիսակատարությունները մեծ վնաս են հասցնում ժողովրդական տնտեսությանը։ Հայտնի է, որ այդ տոների պատճառով հազարավոր ձեռքեր կտրվում են աշխատանքից։ Կրոնական ծիսակատարությունները, ուխտագնացությունները հատկապես վնասում են գյուղատնտեսական աշխատանքներին։ Ուխտ գնացողները մեծ մասամբ զբաղվում են հարբեցողությամբ, որի հետևանքով առաջ են գալիս անկարգություններ, ավտոմեքենաների և սայլերի վթարների պատճառով մարդկային զոհեր և այլն։

Սակայն կրոնական ծիսակատարությունների հասցրած վնասները միայն դրանով չեն վերջանում, հաճախ այդ ծիսակատարությունները առիթ են դառնում վարակիչ հի-



digitised by A.R.A.R.@

վանդումթյունների տարածման։ Վերցնենք, օրինակ, հաղորդությունը։ Տերտերը հաղորդելիս իր մատը հավատացյալների բերանն է մտցնում։ Պարզ է, որ այդ ճանապարհով վարակը հիվանդից անցնում է առողջին։ Կրոնի սպասավորները միշտ հանդես են եկել գիտության և առաջադիմության դեմ։ Հայտնի է, թե ծաղիկ հիվանդությունը ինչպիսի անթիվ զոհեր էր տանում երկրագնդի բոլոր մասերում, կուրացնում միլիոնավոր մարդկանց։ Սակայն երբ գիտությունը գտավ այդ զարհուրելի համաճարակը կանխելու միջոցը, Հռոմի Պապը հատուկ կոչով դիմեց հավատացյալներին, ասելով՝ «Ամեն ոք, ով այդ պատվաստումը կատարում է, նա այլևս աստծու հպատակը չէ... Ծաղիկը աստծու պատիժն է մարդկանց մեղքերի համար»։

Կարելի է բերել մի այլ օրինակ. Ի. Մ. Սեչենովի «Գլխուղեղի ռեֆլեքսները» աշխատությունը լույս տեսնելուց հետո, Պետերբուրգի մետրոպոլիտը դիմեց կառավարությանը, խնդրելով՝ «պարոն պրոֆեսոր Սեչենովին հնազանդեցնելու և ուղղելու նպատակով, նրան արտաքսել և նստեցնել եկեղեցական բանտ իր հանդուգն, հոգեսպան և վնասակար ուսմունքի» համար։

Պետք է հիշել, որ գիտա-աթեիստական



պրոպագանդան իդեոլոգիական աշխատանքի կարևոր բնագավառներից մեկն է։ Այդ իսկ պատճառով ագիտատորների խնդիրն է՝ համբերատար բացատրել կրոնի վնասակար նշանակությունը։

Հասկանալի է, որ կրոնի դեմ ուղղված պայքարը պետք է լինի առանց աղմուկի, առանց վարչարարության։ Հավատացյալներին վիրավորելը, նրանց կրոնական զգացմունքներին դիպչելը դատապարտված, արատավոր մեթոդներ են, որոնցից պետք է վճռականապես հրաժարվել, որովհետև դրանք ոչ միայն չեն օգնում գործին, այլև վնասում են։ Բացահայտելով կրոնի վնասակար դերը, երբեք չի կարելի հավատացյալներին համարել անհարազատ, խորթ և թշնամի։ Պետք է իմանալ, որ հավատացյալները նույն բանվորներն ու կոլտնտեսականներն են, սովետական նույն քաղաքացիները, որոնք այսօր, տվյալ հարցում կանգնած են սխալ ճանապարհի վրա և որոնք վաղը կազատվեն այդ մոլորությունից։ Գիտա-աթեիստական պրոպագանդան ծանր, դժվար աշխատանք է, որը պետք է տանել համբերությամբ և սիստեմատիկ կերպով։



digitised by A.R.A.R.@

Վ. Ի. Լենինը ասել է՝ «Կրոնական նախապաշարմունքների դեմ պետք է պայքարել չափազանց զգուշությամբ, մեծ վնաս են պատճառում նրանք, ովքեր այդ պայքարի մեջ մտցնում են կրոնական զգացմունքի վիրավորանքը։ Պետք է պայքարել պրոպագանդայի միջոցով, լուսավորության միջոցով»։

---



## ԱՌԱՋԱՎՈՐ ՓՈՐՁԻ ԱՐՄԱՏԱՎՈՐՄԱՆ ՇՆՈՐՀԻՎ

Հ. ՄԵԼԻՔՅԱՆ
ՀԿԿ Ախուրյանի շրջկոմի քարտուղար

*Առաջավորների փորձի ընդհանրացման ու արմատավորման ուղղությամբ զգալի աշխատանք է կատարված Ախուրյանի շրջանի կոլտնտեսություններում և մեքենա-տրակտորային կայաններում։*

*Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսում ներկայացված բազմաթիվ կոլտնտեսությունների, սովխոզների ու ՄՏ կայանների դրական ու խիստ ուսանելի փորձը բոլոր կոլտնտեսականների ու մեխանիզատորների սեփականությունը դարձնելու նպատակով, շրջանում ժամանակին կազմակերպվել ու անց են կացվել զանազան թեմաներով մի շարք զեկուցումներ ու զրույցներ։ Այդ զրույցներում ու զեկուցումներում հաճախակի հանդես են եկել նաև ցուցահանդեսն այցելած ընկերները։*



digitised by A.R.A.R.@

Առաջավոր փորձի արմատավորմամբ պետք է բացատրել այն հանգամանքը, որ մեր շրջանի շատ կոլտնտեսություններ, բրիգադներ և առանձին օղակներ սիստեմատիկաբար բարձրացնում են հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը։ Օրինակ, նախորդ տարվա համեմատությամբ անցյալ տարի Ղարիբջանյան գյուղի կոլտնտեսությունը հացահատիկային կուլտուրաների յուրաքանչյուր հեկտարից 3 ցենտներ ավելի բերք ստացավ, Կառնուտի՝ Վորոշիլովի անվան կոլտնտեսությունը այդ նույն ժամանակամիջոցում յուրաքանչյուր հեկտարից 100 ցենտներ ավելի ճակնդեղ ստացավ։ Մթերատվության ասպարեզում բարձր ցուցանիշներ է ձեռք բերել Հովիտ գյուղի Մյասնիկյանի անվան կոլտնտեսությունը, որտեղ անցյալ տնտեսական տարում կովերի միջին կաթնատվությունը 630 լիտրով ավելին էր 1954 թվականի համեմատությամբ։ Իհարկե, նշված կոլտնտեսությունները շրջանում եզակի չեն։ Այդ բանում համոզվելու համար բավական է հիշատակել մեր ձեռք բերած հաջողությունները ամբողջ շրջանի մասշտաբով։ Այսպես, 1954 թվականի նույն ցանքատարածությունից, 1955 թվականին շրջանի կոլտնտեսությունները 30 հազար փութ հացա-



հատիկ և 84 հազար ցենտներ շաքարի ճակնդեղ ավելի ստացան։ Յուրաքանչյուր կովի կաթնատվությունը բարձրացավ 448 կիլոգրամով։

Կովերի կաթնատվության բարձրացման ուղղությամբ ձեռք բերված հաջողությունները զգալի են ընթացիկ տնտեսական տարում։ 1955 թվականի համեմատությամբ, այս տարի շրջանում յուրաքանչյուր կովի կաթնատվությունը բարձրացել է 152,8 կիլոգրամով, կամ անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ ավելի է ստացվել 5.272 ցենտներ կաթ։ Առանձնապես բարձր ցուցանիշների են հասել Կառնուտի, Արևիկի, Երազգավորսի և մյուս գյուղերի կոլտնտեսությունները։ Կառնուտի Սպանդարյանի անվան կոլտնտեսությունը մինչև մարտի 1-ը յուրաքանչյուր կովից ստացել է 824 կիլոգրամ կաթ, որը անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ ավելի է 433 կիլոգրամով։

Հացահատիկի ու ճակնդեղի արտադրության ավելացման և կաթնատվության բարձրացման գծով հատկապես է՛լ ավելի նշանակալից ցուցանիշների են հասել շրջանի շատ կոլտնտեսությունների առանձին բրիգադներ ու օղակները։ Այդ մասին են վկա-






3532-56
digitised by A.R.A.R.@

յում հետևյալ փաստերը։ Եթե 1954 թվականի տնտեսական տարում Առափիի Կույբիշևի անվան կոլտնտեսության կթվորուհի Ս. Այվազյանը իր խնամած յուրաքանչյուր կովից ստացել էր 1.200 լիտր կաթ, ապա 1955 թվականին կովերի միջին կաթնատվությունը նա հասցրեց 2.200 լիտրի։ Նույն Առափիի կոլտնտեսությունից Լենա Ռաշոյանի 11 հոգուց բաղկացած օղակը 5,5 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից անցյալ տարի հավաքեց 451 ցենտներ շաքարի ճակնդեղ, որը 230 ցենտներով ավելի է նախատեսված պլանից։

Այս հաջողությունները իհարկե հեշտությամբ չէ, որ ձեռք են բերվել։ Մեր կոլտնտեսությունները, առանձին բրիգադաներ ու օղակներ այդ նվաճումներին հասել են համառ ու լարված աշխատանքի շնորհիվ, կոլտնտեսային արտադրության մեջ առաջավոր փորձը և գիտության նվաճումները արմատավորելու շնորհիվ։ Մեր ասածը հաստատելու համար, բերենք թեկուզ Լենա Ռաշոյանի օղակի աշխատանքի փորձը։ Որպեսզի ժամանակին ապահովվեր ճակնդեղի բարձր բերքը, բերքահավաքն ավարտելուց անմիջապես հետո օղակի անդամներն իրենց ամրացված հողամասը պարարտացրին պա



հանջված քանակությամբ տեղական ու հանքային պարարտանյութերով, որից հետո այդ նույն տարածության վրա կատարվեց ցրտահերկ։ Ցրտահերկը կատարվեց 27—30 սմ. խորությամբ, ագրոտեխնիկական լավագույն ժամկետում։ Գարնանը ցանքը կատարելուց մի քանի օր առաջ օղակի անդամները հողը կրկին պարարտացրին։ Յուրաքանչյուր հեկտարի վրա շաղ տրվեց մոտ 1 տոննա հանքային և 22 տոննա տեղական պարարտանյութ։

Այս աշխատանքներն ավարտելուց հետո հողը հարթեցվեց և սահմանված ժամկետից մի քանի օր շուտ կատարվեց ցանքը։ Հետագայում պարզվեց, որ վաղ ցանքը, սովորականի համեմատությամբ ունի մի շարք առավելություններ։ Օրինակ, բույսերը ունենում են ուժեղ և զարգացած արմատային սիստեմ, աճում են արագ և հիվանդությունների նկատմամբ լինում են ավելի դիմացկուն։

Ցանքի ժամանակ առանձնակի ուշադրություն էր դարձվում շարքերի ուղղության պահպանման վրա, որովհետև ուղիղ շարքերի դեպքում կուլտիվատորը փխրեցնում է միջշարքային տարածությունները, առանց վնասս պատճառելու շարքերում աճած ծիլերին։ Օղակի անդամները հետագայում իրենց



digitised by A.R.A.R.@

ուշադրությունը կենտրոնացրին ճակնդեղի ցանքերը հանքային պարարտանյութերով սնելու, փխրեցման ու նոսրացման աշխատանքների վրա։ Տարիների փորձով նրանք եկան այն համոզման, որ բարձր բերք ստանալու կարևոր միջոցներից մեկը, դա սիստեմատիկ և բարձրորակ փխրեցում կատարելն է։ Ռաշոյանի օղակը 1953 թվականին ճակնդեղի պլանտացիան փխրեցրել էր 4 անգամ՝ ստացել 318 ցենտներ բերք, 1954 թվականին՝ 6 անգամ և ստացել 391 ցենտներ բերք, իսկ 1955 թվականին՝ 8 անգամ և յուրաքանչյուր հեկտարից ստացել է 451 ցենտներ բերք։

Հատուկ ուշադրության է արժանի նաև Արևիկ կոլտնտեսության կթվորուհի Մ. Հարությունյանի ուսանելի փորձը։ Նրան հանձնված կովերից բարձր կաթնատվություն ստանալու «գաղտնիքը» ամենից առաջ բացատրվում է այն հանգամանքով, որ նա շատ հաճախ փոփոխման է ենթարկում կերերի տեսակները, որոնք ավելի ախորժաբեր ազդեցություն են թողնում անասունների վրա։ Նա լուրջ ուշադրություն է դարձնում նաև այն հանգամանքին, թե ծնելուց հետո ո՞ր կովը կերի ինչ տեսակն է, որ ավելի ա-



խորժակով է ուտում և դրանով էլ կերակրում է նրանց։ Հարությունյանը նախքան կիթ ըսկըսելը կովերի կուրծքը լվանում է գոլ ջրով, ապա մասաժ անում։ Այդ հանգամանքը նույնպես նպաստում է կաթնագեղձի արագ զարգացմանը։

Առաջավոր փորձի արմատավորման ուղղությամբ գովելի գործ են կատարել նաև Ախուրյանի և Ղարիբջանյանի մեքենա-տրակտորային կայանների տրակտորիստները։ Նըրանք իրենց սպասարկած կոլտնտեսություններում տիպային պայմանագրով սահմանված ժամկետներում լրիվ ավարտեցին բոլոր տեսակի աշխատանքները և ունեցան նավթամթերքի զգալի տնտեսում։ 1955 թվականի 570 հեկտար կարտոֆիլի ու կաղամբի ցանքը կատարվեց քառակուսի և քառակուսի-բնային եղանակով։ Դա հնարավորություն տվեց դաշտային աշխատանքի մեքենայացումը հասցնելու ավելի բարձր աստիճանի։ Եթե երկու տարի առաջ կարտոֆիլի մակերեսային առաջին փխրեցումը ձեռքով կատարելիս տևում էր 10—15 օր, ապա ներկայումս այդ ժամկետը կրճատվել է 8—10 օրով։ Նույնը կարելի է ասել նաև մյուս կուլտուրաների մշակման ժամկետները կրճատելու մասին։



digitised by A.R.A.R.@

1955 թվականին մեր շրջանի կոլտնտեսությունները առաջին անգամ 700 հեկտար տարածության վրա կատարեցին եգիպտացորենի ցանք և յուրաքանչյուր հեկտարից ստացան 55 ցենտներ կողր ու 200 ցենտներ սիլոսի կանաչ մասսա։

Կոլտնտեսային արտադրության մեջ արմատավորելով առաջավորների փորձը, Ախուրյանի շրջանի կոլտնտեսությունները պատվով կկատարեն պարտիայի XX համագումարի որոշումները և երկրին կտան ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ։

---

---

## ԲԱՐՁՐ ՑՈՒՑԱՆԻՇՆԵՐՈՎ ԿԱՏԱՐԵՆՔ ՍՏԱՆՁՆԱԾ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

### Խ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

*Սովետական ժողովուրդը ջերմորեն ընդունեց ՍՄԿՊ XX համագումարի որոշումները։ Այդ պատմական փաստաթղթերում վառ կերպով արտացոլված է պարտիայի և կառավարության հոգատարությունը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի հետագա զարգացման, աշխատավորների նյութական կուլտուրական հարաճուն պահանջմունքների բավարարման նկատմամբ։ Համագումարը նշեց, որ հանրային արտադրության ներկայումս ձեռք բերված մակարդակը թույլ է տալիս արագ տեմպով զարգացնել ոչ միայն արտադրության միջոցների, այլև ժողովրդական սպառման առարկաների արտադրությունը։*

*Պարտիայի XX համագումարի որոշումները կենսագործելու, մեր երկրում պարենային ապրանքների առատություն ստեղծելու համար ջանք չի խնայում Երևանի Պահա-*



digitised by A.R.A.R.@

ծոների գործարանի կոլեկտիվը։ Նոր հնգամյակի առաջին տարվա առաջին եռամսյակի պլանը կատարված է 147,7 տոկոսով, իսկ աշխատանքի արտադրողականության պլանը՝ 111 տոկոսով, գերակատարված է նաև արտադրանքի ինքնարժեքի իջեցման պլանը։

Վեցերորդ հնգամյակի առաջին տարվա արտադրական պլանը իր բոլոր ցուցանիշներով ժամկետից շուտ կատարելու համար գործարանի կոլեկտիվը մրցության մեջ է մտել եղբայրական Վրաստանի Գորիի Պահածոների գործարանի կոլեկտիվի հետ և պարտավորություն է ստանձնել 1956 թվականի արտադրական պլանը կատարել Հայաստանում սովետական կարգերի հաստատման 36-րդ տարեդարձի օրը, պլանից դուրս երկրին տալով մեկ միլիոն տուփ պահածո։ Միաժամանակ աշխատանքի առաջավոր մեթոդների կիրառման և աշխատատար պրոցեսների մեքենայացման միջոցով աշխատանքի արտադրողականությունը, պլանային համեմատությամբ, գերակատարել մեկ տոկոսով։

Արտադրության մեջ կիրառելով խնայողության խստագույն ռեժիմը, խոտան արտադրանքի իջեցման և ոչ արտադրողական



ծախսերի կրճատման հաշվին արտադրանքի ինքնարժեքը իջեցնել 5,2 տոկոսով։

Գործարանի կոլեկտիվը պարտավորվել է ավելացնել բարձր տեսակի պահածոների թողարկման չափը պլանով նախատեսվածից 2 տոկոսով ավելի, պատրաստի արտադրանքի թողարկման պլանը կատարել 105 տոկոսով և այլն։

Այս օրերին գործարանում խոշոր աշխատանք է կատարվում մեքենաների և սարքավորումների վերանորոգման գծով։ Գործարանի բոլոր աշխատողները ձգտում են մրգի և բանջարեղենի մշակման արտադրական նոր սեզոնը սկսել բարձր կազմակերպվածությամբ։

Փականագործ կոմունիստ Սերգեյ Ցիլինսկու նախաձեռնությամբ գործարանի մեխանիկական ցեխում լայն մրցություն ծավալվեց գործարանի մեքենաների և սարքավորումների վերանորոգման աշխատանքները ժամկետից շուտ և բարձր որակով կատարելու համար։ Շնորհիվ ծավալված սոցիալիստական մրցության, փականագործների բրիգադան ժամկետից 10 օր շուտ և բարձր որակով ավարտեց բանջարեղենի ցեխի կանաչ ոլոռի մշակման ագրեգատի վերանորոգման աշխատանքը, իսկ Արսեն Միքայելյանի բրի-



digitised by A.R.A.R.@

պաղան ժամկետից շուտ ավարտեց մրգի ցեխի մուրաբաների եփման կաթսաների վերանորոգումները. լուրջ աշխատանք է կատարվում նաև բարձր արտադրողականությամբ աշխատող մեքենաների ներդրման ուղղությամբ։ Արդեն բանջարեղենի ցեխում տեղադրվել են 2 նոր և լրիվ մեքենայացված վառարաններ։ Այդ նոր ագրեգատների մոնտաժային աշխատանքը ավարտվեց նախատեսված ժամկետից 15 օր շուտ։

Բանջարեղենի ցեխում նոր ագրեգատների տեղադրումը հնարավորություն տվեց լրիվ մեքենայացնել բանջարեղենի իկրայի արտադրությունը։ Այդ նշանակում է արտադրական նույն տարածության վրա իկրայի թողարկումն ավելացնել մոտ 30 տոկոսով, խնայել մինչև 400 բանվորական օր և կըրճատել գործարանային ու ցեխային ծախսերը մոտ 180 հազար ռուբլով։ Տոմատի ցեխում նախկինում գործող փայտյա չաների փոխարեն, այս տարի տեղադրվեցին չժանգոտվող պողպատյա և հերմետիկ եփման կաթսաներ։ Այդ միջոցառումը ոչ միայն լուրջ կերպով կբարելավի թողարկվող արտադրանքի որակը, այլև հնարավորություն կըտա կաթսաների մեջ հումքի եփման պրոցեսում առաջացած գոլորշին փոխադրել



մեկ ուրիշ տեղ կրկնակի օգտագործելու համար։

Արտադրական այս նոր սեզոնում շահագործման կհանձնվի նորագույն տիպի շոգեկաթսան, որը մեկ ժամում արտադրությանը կտա մոտ 7 տոննա շոգի։ Այդ նշանակում է, որ գործարանում շոգիով աշխատող բոլոր սարքավորումների արտադրողականությունը կբարձրանա 25—30 տոկոսով։ Գործարանի հումքի մատակարարման բազան ընդլայնելու նպատակով կազմակերպված է բանջարաբոստանային նոր սովխոզ։

Վեցերորդ հնգամյակում գործարանը ավելի բարձր զարգացման կհասնի։ Նա կարտադրի մոտ 10 միլիոն տուփ պահածո։ Նոր հնգամյակի տարիներին մեծ չափերով կաճեն պահածոների այն տեսակները, որոնց պահանջարկը ավելի շատ է բնակչության կողմից, այսպես, օրինակ, տոմատի, մրգի հյութի և մուրաբաների արտադրությունը նոր հնգամյակում կաճի 60—80 տոկոսով։

Գործարանի կոլեկտիվը ջանք չի խնայի ստանձնած պարտավորությունները գերազանց ցուցանիշներով կատարելու համար։

digitised by A.R.A.R.@

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ԲՈՒՌՆ ՎԵՐԵԼՔԸ ՍՍՌՄ-ՈՒՄ

## (ԹՎԵՐ ԵՎ ՓԱՍՏԵՐ)

Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության մշտական հոգատարության շնորհիվ սովետական գիտնականները տարեցտարի մեծ հաջողություններ են ձեռք բերում գիտության զարգացման բնագավառում: Ահա այդ են հաստատում հետևյալ փաստերը:

☆ Աշխարհում առաջինը սովետական գիտնականներն էին, որ փայլուն կերպով լուծեցին ատոմային էներգիա ստանալու պրոբլեմը: Նրանց ստեղծագործական մտքի արդյունքն է էլեկտրոնային հաշվիչ մեքենաների, զանազան գործիքների ու մեխանիզմների պատրաստումը:

☆ Պարտիայի XX համագումարը խնդիր դրեց նոր թափով զարգացնել գիտությունը վեցերորդ հնգամյակում: Գիտնականների ջանքերը ուղղվելու են առաջին հերթին ժողովրդատնտեսական կարևոր նշանակություն ունեցող պրոբլեմների լուծմանը: Գիտա-հետազոտական հիմնարկները մոտեցվելու են արտա-



դրությանը և այդ հիմնարկությունները հագեցվելու են ժամանակակից գիտական սարքավորումներով ու նյութերով: Ապահովվելու է գիտության և տեխնիկայի նվաճումների առավելագույն օգտագործումը պրակտիկայում:

☆ Նոր հնգամյակում խոշոր ուշադրություն է դարձվելու տեխնիկայի պրոգրեսի, հատկապես արտադրության պրոցեսների ավտոմատացման հարցի վրա: Թե ավտոմատացումը ինչպիսի տնտեսական խոշոր էֆեկտ է տալիս, կարելի է բերել հետևյալ փաստը. Դնեպրի հիդրոէլեկտրակայանի 650 հազար կիլովատ ընդհանուր կարողությամբ 9 հիդրոտուրբինների և մի շարք այլ մեխանիզմների սպասարկում են ընդամենը 6 հերթապահ:

☆ Սովետական Միությունում կառուցված է աշխարհում առաջին ատոմային էլեկտրակայանը: Վեցերորդ հնգամյակում կառուցվելու են ատոմային մի շարք նոր էլեկտրակայաններ 2 և 2 ու կես միլիոն կիլովատ ընդհանուր կարողությամբ, որը մեկ ու կես անգամ գերազանցելու է ԳՈԷԼՌՈ-ի նշանավոր պլանով նախատեսված բոլոր էլեկտրակայանների կարողությունը: Նախատեսվում է ատոմային էլեկտրակայանները կառուցել առաջին հերթին այն շրջաններում ու վայրերում, որտեղ վառելիքի սեփական բազա չկա:

☆ Վեցերորդ հնգամյակում լուրջ ուշադրություն է դարձվելու մասնագիտական կադրերի պատրաստման վրա: Երկրի բարձրագույն և միջնակարգ մասնագի-



digitised by A.R.A.R.@

տական ուսումնական հաստատությունները տալու են 4 միլիոն մասնագետ, այսինքն՝ համարյա այնքան, որքան պատրաստվել է անցած երկու հնգամյակների ընթացքում։

☆ Զգալի թվով մասնագետներ են պատրաստվելու գիտության և տեխնիկայի ֆրոնտում աշխատելու համար, հատկապես ավտոմատիկայի, տելեմեխանիկայի, ռադիոտեխնիկայի և ռադիոլոկացիայի, ինչպես նաև ատոմային էներգիան խաղաղ նպատակներով օգտագործելու մասնագետներ։

☆ 6-րդ հնգամյակում երկիրը ստանալու է 650 հազար ինժեներ՝ արդյունաբերության, տրանսպորտի, շինարարության համար և գյուղատնտեսական մասնագետներ։ Դա երկու անգամ ավելի է, քան այդպիսի մասնագետներ պատրաստվել են հինգերորդ հնգամյակում։

☆ Զգալի հաջողություններ է ձեռք բերել սովետական գիտությունը հինգերորդ հնգամյակում։ Ամբողջ երկրում գիտական աշխատողների թիվը 1955 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, ավելացել է 38 տոկոսով, ասպիրանտների պատրաստումը չորրորդ հնգամյակի համեմատությամբ ավելացել է 88 տոկոսով։

☆ 5-րդ հնգամյակի տարիներին Սովետական Միության բուհերը տվել են ավելի քան մեկ միլիոն 120 հազար մասնագետ, այսինքն 72 տոկոսով ավելի, քան 4-րդ հնգամյակում։ Երեկոյան և հեռակա բուհերը



տվել են 260 հազար մասնագետ։ Պարտիայի XX համագումարը խնդիր է դրել 6-րդ հնգամյակում զգալիորեն ընդարձակել հեռակա և երեկոյան բուհերի ցանցը։ Դա բանվոր-ծառայողներին հնարավորություն կտա առանց արտադրությունից կտրվելու բարձրագույն կրթություն ձեռք բերել։

☆ Խոշոր աշխատանք է կատարվել մեր երկրի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի համար մասնագետ կադրերի պատրաստման ու ապահովման ուղղությամբ։ 1955 թվականին բոլոր բուհերում (ներառյալ նաև հեռակաները) սովորում էին 1 միլիոն 867 հազար ուսանող, կամ 620 հազարով ավելի, քան 1950 թվականին։ Տեխնիկումներում և միջնակարգ մյուս մասնագիտական ուսումնական հաստատություններում 1955 թվականին սովորում էին 1 միլիոն 959 հազար մարդ, կամ 661 հազարով ավելի, քան 1950 թվականին։

☆ 5-րդ հնգամյակում բոլոր բուհերը տվել են, ինչպես արտադրությունից կտրված, այնպես էլ արտադրությունից ոչ կտրված սովորողների 2 միլիոն 681 հազար շրջանավարտ, կամ 4-րդ հնգամյակի համեմատությամբ աճը կազմում է 39 տոկոս։

☆ Մեր երկրի ժողովրդական տնտեսությունը որակյալ բանվորական կադրերով ապահովելու համար 5-րդ հնգամյակում աշխատանքային ռեզերվների ուսումնարանները և դպրոցները բաց են թողել 2 միլիոն 400 հազար մարդ, այդ թվում՝ տեխնիկական, արհես-



digitised by A.R.A.R.@

տագործական, երկաթուղային ուսումնարանները՝ 746 հազար մարդ, գյուղատնտեսության մեքենայացման ուսումնարանները՝ 628 հազար մարդ և ֆաբգործուսի դպրոցները՝ 990 հազար մարդ, իսկ ձեռնարկություններին կից գործող ֆաբգործուսի դպրոցները այդ ժամանակամիջոցում պատրաստել են ավելի քան 420 հազար բանվոր։

☆ Կուլտուրական շինարարության բնագավառում կարևորագույն խնդիրը ժողովրդական կրթության հետագա վերելքն է։ Սովետական Միությունում լրիվ իրագործվել է ընդհանուր յոթնամյա կրթությունը։ Վեցերորդ հնգամյակում նախատեսվում է իրագործել ընդհանուր միջնակարգ կրթությունը քաղաքներում և գյուղական վայրերում։

☆ Նոր հնգամյակի ընթացքում երկրի միջնակարգ դպրոցների 10-րդ դասարանները բաց կթողնեն 6 միլիոն 300 հազար շրջանավարտ, կամ 2 անգամ ավելի, քան հինգերորդ հնգամյակում։

☆ Նախատեսվում է 6-րդ հնգամյակում պետության միջոցներով կառուցել բազմաթիվ քաղաքային և գյուղական նոր դպրոցներ, որտեղ սովորելու են մոտ 4 միլիոն աշակերտ։

☆ Ներկայումս Սովետական Միության բոլոր մասսայական, հանրակրթական դպրոցներում աշխատում են ավելի քան 1 միլիոն 700 հազար ուսուցիչ։

☆ Նոր հնգամյա պլանի համաձայն սովետական ժողովրդի կուլտուրական սպասարկումը է՛լ ավելի



բարելավելու համար լայն տարածում կստանան կինոն, մամուլը, ռադիոն, հեռուստատեսությունը։ Ընդարձակվելու ու բարելավվելու են գրադարանների, ակումբների և մյուս կուլտուր-լուսավորական հիմնարկների ցանցի աշխատանքները։

☆ Պարտիայի XX համագումարի Դիրեկտիվներում նախատեսված է լայնորեն ծավալել բուժհիմնարկների շինարարությունը։ Վեցերորդ հնգամյակում կառուցվելու են 3 անգամ ավելի հիվանդանոցներ և 2,4 անգամ ավելի մանկական հիմնարկներ, քան 5-րդ հնգամյակում։ Գոյություն ունեցող մանկապարտեզներում և մանկամսուրներում տեղերի թիվը կաճի մոտ 45 տոկոսով։

☆ Լուրջ ուշադրություն է դարձվելու ֆիզկուլտուրայի և սպորտի զարգացմանը։ Ֆիզկուլտուրան մասսայական զարգացում պետք է ունենա բնակչության լայն խավերի մեջ, հատկապես երիտասարդության շրջանում։

☆ Երիտասարդության կրթության գործը դյուրացնելու համար 6-րդ հնգամյա պլանի Դիրեկտիվներում նախատեսված է նոր ուսումնական տարվանից վերացնել միջնակարգ դպրոցների բարձր դասարաններում, միջնակարգ մասնագիտական և բարձրագույն ուսումնական հաստատություններում գոյություն ունեցող ուսման վարձը։

☆ Հինգերորդ հնգամյակում Սովետական Միությունում լայն զարգացում ստացավ կինոների, դրա-



digitised by A.R.A.R.@

դարանների և ակումբների ցանցը։ 1955 թվականին երկրի բոլոր կինոստուդիաները բաց են թողել 82 կինոֆիլմ, որից 65-ը գեղարվեստական նկար։ Կինոսարքավորումների թիվը անցել է 58 հազարից։ 1955 թվականի վերջին Սովետական Միությունում կար բոլոր տեսակի 390 հազար գրադարան, որոնք ունեին մոտ 1 միլիարդ 350 միլիոն օրինակ գիրք։ Կուլտուրայի պալատների ու տների, ակումբների և խրճիթընթերցարանների թիվը հասավ 126 հազարի։

☆ 1955 թվականին ամբողջ երկրում հրատարակվող գրքերի տիրաժը անցավ 1 միլիարդ օրինակից և 1950 թվականի համեմատությամբ ավելացավ 24 տոկոսով, ժուռնալների տիրաժը ավելացավ 99 տոկոսով, իսկ թերթերի տարեկան տիրաժը՝ 47 տոկոսով։

☆ Մինչև նոր հնգամյակի վերջը Սովետական Միության կինոստուդիաները տարեկան բաց են թողնելու ոչ պակաս քան 120 լիամետրաժ կինոնկար։

☆ Նոր հնգամյակում խոշոր աշխատանքներ են կատարվելու ռադիոհաղորդման և հեռուստատեսության հետագա ընդլայնման ու բարելավման ուղղությամբ։ Հնգամյակի ընթացքում ռադիո-հաղորդման կայանների կարողությունները ավելանալու են 90 տոկոսով։ Մինչև 1960 թվականը հեռուստատեսական կայանների քանակը Սովետական Միությունում հասցվելու է 75-ի, արմատավորվելու է գունավոր հեռուստատեսության հաղորդումը։

---



# ԽԱՂԱՂ ԳՈՅԱԿՑՈՒԹՅԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆԸ

(Ֆրանս-սովետական բանակցությունների արդյունքների առթիվ)

ՍՍՌՄ Կառավարության հրավերով մայիսի 15-ից մինչև 19-ը Մոսկվայում էին գտնվում Ֆրանսիական Ռեսպուբլիկայի Մինիստրների Խորհրդի Նախագահ Գի Մոլլեն, Արտաքին Գործերի Մինիստր Քրիստիան Պինոն և նրանց ուղեկցող անձինք։ Մոսկվայում գտնվելու ժամանակ բանակցություններ տեղի ունեցան նրանց և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ Ն. Ա. Բուլգանինի, ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Անդամ Ն. Ս. Խրուշչևի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահի Առաջին տեղակալ ու ՍՍՌՄ Արտաքին Գործերի Մինիստր Վ. Մ. Մոլոտովի, ինչպես նաև սովետական ղեկավար մյուս գործիչների միջև։

Ֆրանս-սովետական բանակցություններին չթուլացող հետաքրքրությամբ հետևում էր



digitised by A.R.A.R.@

բոլոր երկրների և իհարկե, ամենից առաջ, Սովետական Միության ու Ֆրանսիայի լայն հասարակայնությունը։ Բանակցությունները և նրանց արդյունքները մեծ նշանակություն ունեն ոչ միայն ՍՍՌՄ և Ֆրանսիայի միջև հարաբերությունների հետագա զարգացման համար, այլև ընդհանուր խաղաղության ամրապնդման և ժողովուրդների անվտանգության համար։

Ֆրանսիան և Սովետական Միությունը երկու մեծ տերություններ են, որոնք կարևոր դեր են խաղում համաշխարհային ասպարեզում։ Քիչ չեն նրանց ընդհանուր շահերը։ Երկու պետությունների ժողովուրդներին էլ ամենից առաջ միավորում է խաղաղության ընդհանուր ձգտումը, նոր պատերազմ թույլ չտալու ձգտումը։ Գերմանական իմպերիալիզմի կողմից հրահրված անցյալ երկու համաշխարհային պատերազմները անհամար տառապանքներ պատճառեցին մեր երկրի և Ֆրանսիայի ժողովուրդներին։ Ընդհանուր թշնամու դեմ մղված մարտերի կրակում է՛լ ավելի ամրապնդվեց բազմամյա տրադիցիաներ ունեցող նրանց բարեկամությունը։

Ֆրանսիայի պետական գործիչների Մոսկվա ժամանելու նախօրյակին պատասխանելով ֆրանսիական «Մոնդ» թերթի հարցերին,



ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ Ն. Ա. Բուլգանինը հայտարարեց. «Ֆրանսիայի և Սովետական Միության արմատական ազգային շահերի ընդհանրությունը հրամայաբար թելադրում է այն բանի անհրաժեշտությունը, որ մեր միջև մշտական համագործակցություն լինի խաղաղության ամրապնդման համար մղվող պայքարում»։ Թեպետ և երկու երկրների միջև գոյություն ունեն տարաձայնություններ՝ մի ամբողջ շարք հարցերի գծով, ներկայումս չկա մի այնպիսի միջազգային պրոբլեմ, որը անհաղթահարելի խոչընդոտ հանդիսանար Սովետական Միության և Ֆրանսիայի միջև բարեկամության ու համագործակցության զարգացման ճանապարհին։

Կրեմլում վարվող բանակցությունները տևեցին չորս օր։ Դրանց արդյունքները շարադրված են բանակցությունների վերաբերյալ մամուլում հրատարակված ֆրանս-սովետական համատեղ Հայտարարության մեջ։

Հայտարարությունից երևում է, որ բանակցությունները տեղի են ունեցել բարեկամության, սրտագին անկեղծության մթնոլորտում և փոխըմբռնման ոգով։ Բանակցությունների այդ բնորոշ գիծը միահամուռ կերպով նշել են և այնտեղ գտնվող բոլոր ժուռ-



digitised by A.R.A.R.@

նալիստները, այդ թվում՝ ֆրանսիական մամուլի բազմաթիվ ներկայացուցիչները։ «Դիսկուսիան շիտակ էր ու անմիջական...— հաղորդել է Մոսկվայից Փարիզի «Կրուա» թերթի թղթակիցը։— Ընդհանրապես Մոսկվայում անցկացված բոլոր այդ չորս օրերի մթնոլորտը չափազանց անկաշկանդ էր... Ճաշկերույթների և ընդունելությունների ժամանակ մասնավոր զրույցները ապշեցուցիչ անկեղծության էին հասնում»։

Երկու կառավարությունների ներկայացուցիչները քննարկեցին լայն շրջան ընդգրկող հարցեր, մտքերի փոխանակություն կատարեցին ինչպես ֆրանս-սովետական հարաբերությունների հարցի և նրանց բարելավման ուղիների, այնպես էլ միջազգային պրոբլեմների կոմպլեքսի վերաբերյալ։ Այդ օգտակար դիսկուսիաների ժամանակ պարզվեց, որ մի շարք հարցերում երկու կառավարություններն էլ ունեն ընդհանուր տեսակետներ։ Իսկ ինչ վերաբերում է այն հարցերին, որոնց վերաբերյալ չհաջողվեց նվազեցնել տարաձայնությունը, ապա բանակցությունները հնարավորություն տվեցին կողմերին լավ ըմբռնելու միմյանց դիրքը։ Հարկ չկա զարմանալու, որ ֆրանսիական և սովետական կառավարությունների միջև դեռևս տարաձայնություններ



կան որոշ պրոբլեմների վերաբերյալ։ Ոչ ոք չէր էլ սպասում, թե այդ տարաձայնությունները, որոնք երկար տարիների «սառը պատերազմի» արդյունք են, հնարավոր կլինի վերացնել մի քանի օրվա բանակցություններով։ Այս կապակցությամբ կարևոր է այն, որ բանակցությունները հանգեցրին փոխըմբռնման։ Իսկ դա հնարավորություն է տալիս հուսալու, որ շահագրգռված պետությունների դիրքերը աստիճանաբար կմերձենան։

Բանակցությունների ժամանակ Սովետական Միության և Ֆրանսիայի ներկայացուցիչները ցուցաբերեցին փոխադարձ վստահությունն ամրապնդելու պատրաստակամություն, երկու երկրների միջև բարեկամական համագործակցություն զարգացնելու հաստատուն կամք։ «Երկու կառավարություններն էլ,— ասված է հայտարարության մեջ,— շարունակելու են համագործակցությունը ընդհանուր խաղաղությունն ամրապնդելու օգտին՝ չկարգավորված կարևոր հարցերի լուծման նպատակով։ Նրանք համոզված են, որ իրենց ջանքերի, ինչպես նաև խաղաղության միևնույն կամքով ոգեշնչված մյուս կառավարությունների ջանքերի շնորհիվ կհաստատվի միջազգային վստահություն, վերջնականապես կվերացվի սառը պատերազմը,



digitised by A.R.A.R.@

կդադարեցվի սպառազինությունների մրցավազքը և դրանով իսկ ժողովուրդները կփրկվեն նոր պատերազմի սպառնալիքից»:

*Սովետական ժողովուրդը, ինչպես նաև ֆրանսիական ժողովուրդը, մեծ գոհունակությամբ ընդունեց համատեղ Հայտարարության այն մասը, որտեղ երկու կառավարությունների ներկայացուցիչները համոզմունք են հայտնում,* որ պետությունների խաղաղ գոյակցության և բարեկամական համագործակցության համար հիմնական բազա են հանդիսանում տերիտորիալ ամբողջականության և սուվերենության հարգումը, չհարձակվելը, միմյանց ներքին գործերին չմիջամտելը: *Խաղաղ գոյակցության այս սկզբունքները, որոնք գնալով ավելի ու ավելի լայն տարածում են գտնում տարբեր սոցիալ-տնտեսական սիստեմներ ունեցող պետությունների հարաբերություններում, այժմ ճանաչում գտան նաև Սովետական Միության և Ֆրանսիայի հարաբերություններում։*

*Ինչպես արդեն նշվեց վերևում, մոսկովյան բանակցությունների ժամանակ շոշափվեց միջազգային պրոբլեմների մի ամբողջ շարք կոմպլեքս։ Այդ պրոբլեմների մեջ կարևոր տեղ է գրավում զինաթափման հարցը, որը հուզում է երկրագնդի բոլոր ժողովուրդների*



*մտքերը։ Մտքերի փոխանակության ընթացքում սովետական և ֆրանսիական ներկայացուցիչները համաձայնվեցին այն բանում, որ զինաթափման պրոբլեմը ժամանակակից պայմաններում մի այնպիսի անհետաձգելի միջազգային խնդիր է, որի լուծումը բացառիկ դեր կխաղա միջազգային լարվածությունը թուլացնելու, վստահություն ամրապնդելու և ռազմական ծախսերի բեռը թեթևացնելու համար։ ՍՍՌՄ և Ֆրանսիայի կառավարությունները հայտարարեցին, որ իրենց ընդհանուր նպատակն է համաձայնության հասնել զինաթափման, այդ թվում՝ միջուկային զինաթափման հարցում, ատոմային էներգիան բացառապես խաղաղ կարիքների համար օգտագործելու հարցում։ Երկու կառավարություններն էլ շարունակելու են իրենց ջանքերը՝ պետությունների և ամենից առաջ հինգ մեծ տերությունների սպառազինությունների և զինված ուժերի կրճատման վերաբերյալ համաձայնության հասնելու նպատակով։*

*Սովետական Միությունը գործով ցույց է տալիս, որ նա անդուլ կերպով ձգտում է զինաթափման պրոբլեմի գործնական լուծման, սպառազինությունների մրցավազքի դադարեցման։ Դրա համոզիչ ապացույցն է հանդի-*



digitised by A.R.A.R.@

սանում ՍՍՌՄ Կառավարության որոշումը Զինված Ուժերի, սպառազինությունների և ռազմական ծախսերի նոր, զգալի կրճատման մասին։ Սովետական կառավարության այդ պատմական ակտի դրական նշանակությունը ընդհանուր զինաթափության համար այժմ պաշտոնապես ճանաչվեց Ֆրանսիայի կողմից։

«Ֆրանսիայի կառավարությունը,— ասված է բանակցությունների վերաբերյալ համատեղ Հայտարարության մեջ,— ընդունում է իր Զինված Ուժերի և սպառազինությունների միակողմանի կրճատման մասին Սովետական կառավարության ընդունած որոշման նշանակությունը. այդ որոշումը, ինչպես այդ թվում է Ֆրանսիայի կառավարությանը, կարող է հեշտացնել զինաթափման շուրջը վարվող բանակցությունները»։

Ֆրանս-սովետական բանակցությունների ժամանակ բարեկամության և փոխըմբռնման ոգով քննության առնվեցին միջազգային այնպիսի կարևոր հարցեր, ինչպես՝ թույլ զարգացած երկրներին ցույց տրվող տնտեսական և տեխնիկական օգնությունը, Մերձավոր և Միջին Արևելքի, Հարավ-Արևելյան Ասիայի պրոբլեմները և մի քանի այլ հարցեր։



Բանակցությունների մասնակիցները զգալի ժամանակ նվիրեցին ֆրանս-սովետական հարաբերությունների հարցերի քննարկմանը։ Ընդամին երկու կառավարությունների ներկայացուցիչներն էլ միահամուռ կերպով արձանագրեցին, որ բարեկամության բազմամյա տրադիցիաներով միավորված ՍՍՌՄ-ի և Ֆրանսիայի միջև լավ հարաբերությունները զարգանում են փոխադարձ ըմբռնման և հարգանքի հիման վրա։ Համատեղ հայտարարության մեջ ընդգծված է, որ ֆրանս-սովետական հարաբերությունների զարգացումն ու բարելավումը բոլոր բնագավառներում միաժամանակ համապատասխանում է երկու ժողովուրդների շահերին և էական ավանդ է հանդիսանում ընդհանուր խաղաղության և ժողովուրդների անվտանգության ամրապնդման գործում։

Ֆրանսիայի և ՍՍՌՄ-ի ներկայացուցիչների միջև կարծիքների փոխանակություն տեղի ունեցավ առևտրական փոխադարձ հարաբերությունների զարգացման հարցի առթիվ։ Հարկ չկա ապացուցելու, թե ինչպիսի կարևոր դեր է կոչված կատարելու առևտուրը միջազգային համագործակցությունն ընդլայնելու գործում։ Վերջին ժամանակներս ֆրանս-սովետական առևտրա-



digitised by A.R.A.R.@

կան կապերը որոշ չափով աշխուժացել են. աճում է ապրանքաշրջանառությունը ՍՍՌՄ-ի և Ֆրանսիայի միջև: Սակայն ֆրանս-սովետական առևտուրը զգալիորեն ետ է մնում այն հնարավորություններից, որ ունեն դրա համար երկու երկրներն էլ: Ֆրանս-սովետական առևտրի հետագա ծավալման համար լուրջ խոչընդոտ են հանդիսանում Սովետական Միություն արտահանելու համար ֆրանսիական ապրանքների գծով մտցված այն խտրական սահմանափակումները, որ ԱՄՆ-ը պարտադրել է Ֆրանսիային:

Ինչպես հայտարարեցին սովետական ներկայացուցիչները մոսկովյան բանակցությունների ժամանակ, առևտրի ասպարեզում սահմանափակումների և խտրականության բացակայության դեպքում ՍՍՌՄ-ը կկարողանա մոտակա երեք տարում զգալիորեն ավելացնել ֆրանսիական ապրանքների գնումները և համապատասխանորեն՝ սովետական ապրանքների վաճառքը Ֆրանսիային, այն հաշվով, որ եռամյա ժամանակաշրջանի վերջերին ապրանքաշրջանառությունը երկու երկրների միջև ավելանա մոտավորապես 3—4 անգամ՝ 1955 թվականի ապրանքաշրջանառության համեմատությամբ:



Սովետական մարդիկ, ինչպես նաև Ֆրանսիայի բնակչության լայն խավերը, այդ թվում և ֆրանսիական գործարար շրջանները, մեծ գոհունակությամբ ընդունեցին ֆրանս-սովետական այն համատեղ հայտարարությունը, որ երկու երկրների ներկայացուցիչները բանակցությունների շնորհիվ համաձայնության են եկել բոլոր միջոցներով խրախուսելու ֆրանս-սովետական առևտրի զարգացումը: Այդ նպատակով երկու կառավարություններն էլ որոշեցին կնքել երկարատև համաձայնագիր-ապրանքների փոխադարձ մատակարարումների մասին: Այդ համաձայնագիրը նախատեսելու է տարեցտարի զգալիորեն ավելացնել մեքենաների և զանազան ճյուղերի սարքավորման, հումքային և արդյունաբերական ապրանքների ներմուծումը Ֆրանսիայից Սովետական Միություն և համապատասխանորեն Ֆրանսիայի համար հետաքրքրություն ներկայացնող ապրանքների մատակարարումները Սովետական Միությունից: Հիշյալ եռամյա համաձայնագրի կնքման բանակցությունները սկսվելու են Փարիզում, այս տարվա սեպտեմբերին, այն հաշվով, որ համաձայնագիրը գործողության մեջ դրվի 1957 թվականի հունվարի 1-ից:



digitised by A.R.A.R.@

Բանակցությունների ընթացքում մեծ ուշադրություն նվիրվեց Ֆրանսիայի և Սովետական Միության կապերի հարցերին. կուլտուրայի, գիտության և տեխնիկայի բնագավառում։ Սովետական և ֆրանսիական կառավարությունները հավանություն տվեցին «ՍՍՌՄ և Ֆրանսիայի միջև կուլտուրական կապեր հաստատելու մասին համատեղ հայտարարությանը», որը որոշում է ֆրանս-սովետական կուլտուրական համագործակցության սկզբունքները և ձևերը։ Ըստ էության նշված է մեր երկրի և Ֆրանսիայի միջև կուլտուրական և գիտա-տեխնիկական կոնտակտների հետագա զարգացման մի լայն ծրագիր։ Այն նախատեսում է փոխադարձ հիման վրա երկու երկրների համագործակցությունը գրականության, արվեստի, գիտության, տեխնիկայի, առողջապահության, կրթության և այլ բնագավառներում։ Դա կատարվելու է դելեգացիաների և առանձին անձանց փոխայցելություն կազմակերպելու միջոցով, ինֆորմացիա, գրականություն, ռադիոհաղորդման և հեռուստատեսական ծրագրեր, կինոֆիլմեր փոխանակելով, փոխադարձաբար ցուցահան-



դեսների, թատրոնների, գաստրոլների, համերգների կազմակերպումով։ Այժմ մեծ հեռանկարներ են բացվում ֆրանս-սովետական կուլտուրական, գիտական և սպորտային կապերի զարգացման համար։ Դա միայն ուրախություն կարող է պատճառել սովետական և ֆրանսիական ժողովուրդներին։ Որքան լայն կոնտակտներ և կապեր լինեն մեր երկրների միջև կուլտուրայի, գիտության, սպորտի, տուրիզմի գծով, այնքան ավելի լավ փոխըմբռնում կստեղծվի, այնքան ավելի հաջող կզարգանա բարեկամությունը Ֆրանսիայի և ՍՍՌՄ ժողովուրդների միջև։

Սրանք են Մոսկվայում տեղի ունեցած ֆրանս-սովետական բանակցությունների ամենակարևոր արդյունքները, որոնք բուռն հետաքրքրություն առաջ բերին ամբողջ աշխարհում։ Բոլոր երկրների խաղաղասեր հասարակայնությունը ջերմորեն ողջունեց մոսկովյան բանակցությունների վերաբերյալ հրապարակված համատեղ հայտարարությունը։ Բոլորը, բացի նրանցից, ովքեր առաջվա նման հույսը դնում են «սառը պատերազմի» վրա, իրավամբ այդ արդյունքները գնահատեցին որպես խոշոր ավանդ սովետական և ֆրանսիական ժողովուրդների



digitised by A.R.A.R.@

միջև բարեկամությունն ամրապնդելու գործում, որպես մի նոր քայլ միջազգային լարվածությունը թուլացնելու ուղղությամբ։ Բնորոշ է, որ անվիճելի փաստերի դեմ հանդիման ստիպված եղան ֆրանս-սովետական բանակցությունների դրական արդյունքները ընդունել արտասահմանյան մամուլի նույնիսկ այն օրգաններից շատերը, որոնք գուշակում էին նրանց տապալումը և մինչև բանակցությունների ավարտվելն իսկ զանազան չարամիտ հերյուրանքներ ու պրովոկացիոն լուրեր էին տարածում։

Մեր երկրի աշխատավորները գոհունակությամբ ընդունեցին Մոսկվայում տեղի ունեցած ֆրանս-սովետական բանակցությունների հաջող ավարտման վերաբերյալ հաղորդագրությունը, դրա մեջ տեսնելով պետությունների խաղաղ գոյակցության և բարեկամական համագործակցության քաղաքականության լուրջ հաջողությունը, քաղաքականություն, որ անշեղորեն վարում է Սովետական Միությունը։ Սովետական հասարակայնությունը այդ բանակցությունների արդյունքները գնահատում է որպես Ֆրանսիայի և ՍՍՌՄ հարաբերություններում ստեղծվող մի նոր կարևոր էտապի սկիզբ։ Մեր երկրի ժողովուրդները անդուլ կերպով



կամրապնդեն և կզարգացնեն ֆրանսիական ժողովրդի հետ ունեցած տրադիցիոն բարեկամությունը, որը կոչված է մեծ դեր խաղալու ամբողջ աշխարհում կայուն խաղաղություն ստեղծելու գործում։

---

## СОДЕРЖАНИЕ



Պատ. խմբագիր՝ Կ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ




digitised by A.R.A.R.@

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

*Ս. ՊՈՂՈՍՅԱՆ*— «Գյուղացիների նորտացումը և գյուղացիական շարժումները Հայաստանում 9—13-րդ դ. դ.»: *Գինը 20 ռ., 548 էջ, տիրաժ 3.000։*

*Ա. ԱՐՇԱՐՈՒՆԻ*— «Հայ թատերագիտական մտքի պատմությունից»: *Գինը 5 ռ. 65 կ., 140 էջ, տիրաժ 1.000։*

*Գ. ՄԱՐՋԱՆՅԱՆ*— «Բույսերի պաշտպանության համար օգտագործվող թունավոր նյութերը»: *Գինը 6 ռ., 268 էջ, տիրաժ 2.000։*

---

**Отдел пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА**
№ 11 1956 г.

*ՎՖ 03596 Պատվեր 489 Տիրաժ 8950*

---

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։*

*Գինը 50 կոպ.։*